# ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼ

## ԲԱՐԵՈՔՄԱՆ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ

## Ի ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻ

ԳՐԵԱՑ

Հ. ՊՕՂՈՍ Վ. ՊՕՅՆՈՒԷՅՐԻԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՊՕՂՈՍԻ ՔԻՐԻՇՃԵԱՆ
ԲԵՐԱ, ՇԻՇԼԻ ՓՈՂՈՑ ԹԻՒ 5
= 1878 =

# ԱՌԱՋԻ՛Ն ՔԱՅԼ

## ԲԱՐՒՈՔՄԱՆ ԱԶԳԻՍ ՀՌՉՈՑ

### Ի ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻ

Ահաւասիկ, Ազգայինք և Հայրենակիցք իմ, ահաւասիկ լռեցին շառաչիւնք և բոմբիւնք հրազինուց. ահաւասիկ ահեղ և մեծ բանակները դադրեցան իրենց արշաւանքներէն, որոնցմով Հայաստան աշխարհ ոտնակոխ եղեւ. ահաւասիկ հանդչեցան հուրն ու սուրը, որ բոլոր երկիրը լափեցին, քաղաքներ կործանեցին և դաշտեր ապականեցին։ Ո՜հ ինչչափ մարդիկ սպանուեցան, որչափ ալ 'ի գերութիւն վարեցան։ ինչե՞ր չհանդիպեցան ինչուան հիմայ Հայաստանի մէջ. ո՞րպիսի հարստահարութիւններ չկատարուեցան յերեսաց անգութ և աւազակաբարոյ ազգաց, ինչպէս Քրդաց և Չէրքէզաց, և յերեսաց անսանձ պատերազմող ասպատակողաց և կաշառակուրծ գործակալաց ոմանց։

Այսպիսի անտանելի զրկանաց ու չարչարանաց չը կրնալով համբերել շատ մը ժողովուրդք, իրենց տուներնին, քաղաքնին ու գիւղերնին թողլով՝ մերկ ու կողոպուտ ցրուեցան, լեռներուն և փապարներուն մէջ ապաւինեցան, վերջին և անտանելի աղքատութեան հասան, հողի և մոխրի վերայ նստեցան, և աղբիւրի պէս աչուըններնէն արտասուք վազցնելով սաստիկ կը գոչեն և կ'աղաղակեն. — Ո՜ Հայրենակիցք և Արենակիցք մեր՝ պանդուխտք յօտար երկրի, դարձէք նայեցէք անգամ մը, թէ արդեօք տեսնուեցա՞ն աշխարհիս վերայ մեր քաշած տառապանաց նմանները — ։

Այո՛, այո՛, այսպէս են մեր Ազգայնոց հանապազօրեայ ողբն ու աղաղակը և ցաւագին հառաչանքները.

Ո՞ր քարացեալ սիրտ արդեօք այս ամենը լսելով չխանդ-դիր ու չշարժիր։ Ի՞նչպէս Հայ սիրտ մը՝ երբ Վոսփորին ծովեզերեայ, գեղեցիկ ատեղերուն և փառաւոր շէնքե-րուն մէջ հանգիստ կը բնակի, կրնա՞յ անտարբեր մնալ Հայաստանի թշուառութեանցը վերայ։ Քա՛ւ լիցի եղ-բարք իմ՝ Կոստանդնուպօլսոյ Հայազգի բնակիչք, որ այսպիսի սրտառուչ ողբոց և աղաղակաց ականջ չտամք կամ՝ չլսելու զարնեմք։ Պէտք է ամենուս ժամ մը յա-ռաջ փութալ, և գործով յօգնութիւն հասնիլ ողորմելի ազգային եղբարց մերոց, որոնք վերջին աղքատութեան մէջ հալած ու մաշած, խեղճ ու ողբոսպառ աչքերնին դէպ 'ի մեզ դարձուցած շատ դարերէ 'ի վեր մեր օգ-նութեան կ'սպասեն։ Եւ մեք հայրենազգի եղբարքս կըր-նա՞մք անգործ և դատարկ կենալ. կը յուսա՞մք արդեօք որ առանց մեր աշխատութեան իջնայ երկինքէն անոնց համար մանանայն ու լորամարգին։

Արդարեւ այսանկ դժբաղդ և դժնդակ ժամանակի մէջ Ազգս բաղդաւոր գտնուեցաւ և մխիթարութիւն մը ունեցաւ։ Վասն զի ունեցաւ գործոյն գլուխը Կոստան-դնուպօլսոյ Պատրիարք Ամենապատիւ Ներսէս Սրբազան Արքեպիսկոպոսը, և անոր գործակից ազգասէր և ժիր Եկեղեցականներ և Աշխարհականներ, որք բարեսէր գիտմամբ գիշեր ու ցերեկ աշխատեցան Ազգին յօգնու-թիւն հասնիլ ու ձեռն տալ ողորմելի Ազգայնոց, որպէս զի ազատեն զանոնք Հայաստան աշխարհին հարստահա-րողներէն։ Եւ այս վախճանաւ ահա ճանապարհորդեցին յԵւրոպա, Կայսերաց և Թագաւորաց պալատները մը-տան, իմաստուն և առաջին Քաղաքագիտաց հետ խօ-սակցեցան, Եւրոպական մեծի Ատենին՝ ճշմարտութիւնը իմացուցին, և կարող եղան ամենուն մտաց մէջ հաստա-տել թէ — Աշխարհիս վերայ կայ Հայաստան աշխարհ ու Հայոց ազգ մի — որուն նեղութիւնները մեծ են, որ օժանդակութեան կարօտ է, որուն դատը պաշտպանե-լու արժանի է։ Եւ ահա այսպիսեաց փութով և աշխատութեամբ Նաեւ Օսմանեան Պետութիւնը, որոյ

ծովանաւորութեան ներքեւ կը գտնուինք, այս օրերս Պէրլին մայրաքաղաքին մէջ կնքուած դաշնագրութեան 61°. Յօդուածոյն զօրութեամբը յանձնառու եղեւ և հանդիսապէս խոստացաւ՝ թէ բովանդակ Հայաստան աշխարհին մէջ, և ուր որ Հայք բնակած են, պիտի վայելել տալ Հայոց կենաց և ընչից և պատուոյ ապահովութիւնք, և բարւոք կառավարութիւն մը. և Եւրոպիոյ վեց մեծ դաշնակից Պետութիւնք երաշխաւոր եղան այսմ, և Անգղիական տէրութիւնն ալ առանձին դաշնագրով մը իւր մասնաւոր հսկողութիւնն աւելցուց. Այժմ մեր ամենուն իղձն ու փափաքը մի միայն նոյն խոստմունքին գործադրութիւնը ժամ մի յառաջ տեսնելն է, որպէս զի մեր ողորմելի ժողովուրդը քիչ մը շունչ և ոգի առնու, և մեք ալ մեծամեծ օգուտներ կարենամք քաղել 'ի ներկայս և յապագայն. — միայն թէ դիտնամք ժամանակին պահանջածին համեմատ աշխատիլ և գործել։

Մեղի ուրեմն ուրիշ բան չմնար, բայց եթէ գործել, և միշտ գործել, և շատ գործել, և ժամ մի յառաջ յօգնութիւն հասնիլ 'ի Հայաստան բնակող Ազգանոց, դարման տանիլ անոնց աղքատութեան, հնարքներ մտածել Հայաստանի բարւոքման, զանոնք գործադրել ամեն կերպ միջոցներով. և ահա այս նպատակաւ է, որ ես ալ կը փութամ առաջի դնել Ազգիս միջոց մը, զոր կ'անուանեմ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼ ԲԱՐԻՈՔՄԱՆ ԱԶԳԻՍ.

Արեւուն լուսէն աւելի յայտնի կը տեսնուի, թէ վերջին աստիճան և անտանելի աղքատութիւնը տարածուած է բոլոր հայաբնակ աշխարհին մէջ, և մեք չունիմք այնչափ հարստութիւն՝ որով կարող ըլլամք բաշխել առատօրէն անոնց կարօտութիւնը լեցնելու համար, թէպէտ և այդ նպատակին հասնելու և ոչ իսկ արծաթոյ և ոսկւոյ հանքերը բաւական կ'ըլլան։ Պետութիւններ երկրիս խորքին անդունդները իջնելով, և շատ մը մարդիկ մահուան ճանկին զոհելով, դուրս կը հանեն անկէց ազնիւ մետաղները։ Այլ մեր գանձերը երկրիս երեսին վերայ

ծածկուած կը կենան․ բաւական է որ հայազգի հողագործը երկթիզ խորութեամբ հողը վեր 'ի վայր դարձընէ, և ահա իսկոյն կը գտնէ հարստանալու աղբիւր մի։ Հայաստանին արգաւանդ դաշտերը, պարարտ հովիտները, բարեբեր ձորերը, գեղեցիկ բլուրները, ուր քաղցր զեփիւռք կը փչեն, ուր առուակներ կը վազեն, ուր մեծամեծ գետեր կ'անցնին, եթէ ինչպէս որ պէտք է մշակուին, կրնան հողագործին ճակտին քրտանց փոխարէնը հատուցանել առատ բերքերով ընդ միոյ երեսուն և վաթսուն և հարիւր իսկ։

Վասնորոյ Առաջին քայլ բարւոքման ազգիս Հայոց 'ի Հայաստան աշխարհի՝ մի միայն երկրագործութեան Նախակրթական վարժարանաց հաստատութիւնն է։ Ըստ իս ասկէց ուրիշ ճար ու փրկութիւն չկայ Ազգիս աղքատութեան երեսէն ծագած վշտերէ և տառապանքներէ ազատելու համար, և այս երկրագործութեան Նախակրթական վարժարանքս միայն երջանիկ պիտի ընեն մեր աղքատին դժբաղդ ժողովուրդը։ Ասիկայ ըստ իս ամենէն ընկալեալ ճշմարտութիւն մի է, և հարկ չը կայ որ երկար խօսքերով զայն ապացուցանելու աշխատիմ։ Գործը նոյն վարժարանները հաստատելն է, և այս նպատակին հասնելու համար ալ ամենահարկաւոր միջոցը պատրաստ դրամն է։

Հնար է որ մէկ ունեւոր և ազգասէր անձ մը իւր հարստութեամբը այնպիսի վարժարան մը հիմնարկէ և անոր կարեւոր հասոյթն ու եկամուտն ալ սահմանէ․ սակայն դժուարին է մասնաւոր անձէ մը սպասել գործ մը, որ աւելի դիւրութեամբ մանր հանգանակութեանց և փոքր նուիրաց գումարուելովն կրնայ 'ի գլուխ ելլալ։ Ասոր համար շուտով և ժամանակ չկորուսանելով պէտք է Ազգային Երկրագործական ընկերութիւն մը հաստատել ընդ գլխաւորութեամբ Ամենապատիւ Ներսէս Սրբազան Պատրիարքին կոստանդնուպօլսոյ, որ առանձին կանոնադրութիւն և Մատակարար ժողով մը ունենայ, և անդամք ժողովոյն՝ ըլլան արք վկայեալք 'ի հաւատար-

մութեան, յաջողակք 'ի մատակարարութեան և հմուտք երկրագործութեան խնդրոց. վասն զի քանի որ մարդ մը ազգօգուտ ձեռնարկութեանց մէջ ապահովութիւն չտեսներ՝ վստահութիւն չունենար և բնաւ երբէք չյօժարիր առաջաձեռնել իւր նուէրը. Պէտք է և որ սոյն Մատակարար ժողովը պարտաւոր ըլլայ համար տալ ընկերութեան ժողոված դրամոց, վարժարանաց ծախքին, աշակերտելոց թուոյն և ընկերութեան ուրիշ այլ և այլ հանգամանաց և գործոց վերայ, և միանգամայն փոյթ տանի՝ որ Երկրագործութեան նախնական վարժարանները բացուին Հայաստանին այլ և այլ գաւառաց մէջ, և մանաւանդ ուր որ քիչ ծախքով մեծ օգուտ քաղելու յոյս կը տեսնուի.

Ընկերութեան բաժնին համար բաւական է տարեկան արծաթ քսաննոց Մէճիտիէ մը հատուցանել. Աւելի նուէր առաջաձեռնել ուզողները կրնան աւելի բաժին առնուլ. Եւ որոնք որ մշտնջենաւոր ընկեր կամին գրուիլ, երբ նոյն գումարին դրամագլուխը մէկ անգամ միայն չորս Օսմանեան հարիւրնոց ոսկի պիտի վճարեն.

Արդ՝ ինչպէս որ կ'ստուգեն, եթէ մայրաքաղաքիս մէջ երկու հարիւր հազարէն աւելի Հայազգի հաստատուն բնակիչք կան, և ազգային գաւառացի գործաւորք և սպասաւորք յիսուն հազարէն աւելի կը հաշուին, արդեօք մեծ և անկարելի բա՞ն մի է որ Երկրագործական Ընկերութեան բաժինքն յիսուն հազարի հասնին. Թողունք բովանդակ աշխարհիս չորս կողմն ցրուեալ Հայոց ազգը. թէ որ անոնք ալ յօժարելու ըլլան տարին միանգամ արծաթ Մէճիտիէ մի հատուցանել իրենց ազգակցաց երջանկութեան համար, այն ատեն Երկրագործական Ընկերութեան ապագայն շատ աւելի փառաւոր և արդիւնաւոր կրնայ ըլլալ. Երբ յետին աղքատութեան մէջ հալած և մաշած հայրենակից թշուառ եղբարք արտասուալից աչօք միշտ, —Ողորմեցարո՛ւք. ողորմեցարո՛ւք— կը գոչեն և կ'աղաղակեն, ո՞րպիսի քարեղէն սիրտ պիտի ըլլայ արդեօք որ 'ի գութ չշար-

պէս բազմաթիւ թշուառ ընտանեաց վերստին կենդանութեան պատճառ պիտի ըլլայ Երկրագործական Ընկերութիւնս։ Ասկէց աւելի ի՞նչ ուրախութիւն Ազգասիրի մը. ի՞նչ աւելի մխիթարութիւն սրտի մը, բայց եթէ գիտնալ, որ իւր պզտիկ նուէրովը այսպիսի մեծ օգտի մը գործակից կ'ըլլայ։

Թէ որ սանկ է, ի՞նչ բանի կ'սպասեմք. ի՞նչու պարապ տեղ ժամանակնիս կը կորուսանեմք. ի՞նչու ամեն փոյթ և ջանք 'ի գործ չեմք դներ ժամ մի յառաջ այս գերօգտակար Երկրագործական Ընկերութիւնը հաստատել, որով բովանդակ ազգ մը անտանելի աղքատութեան վիշտերէն ազատի։ Ի՞նչ դժուարութիւն կայ արդեօք. ըստ իս և ոչինչ. և ասկէց աւելի դիւրին գործ մը չկրնար ըլլալ. ինչու որ, նաւու գործաւոր մը, սպասաւոր մը, բեռնակիր մը կրնայ տարուան մէջ արծաթ քսաննոց Մէճիտիէ մը հատուցանել, եթէ միայն շաբաթէ շաբաթ քսան արծաթ փարա տալու ըլլայ, մանաւանդ թէ ալ աւելի պակաս. վասն զի շաբաթը քսան արծաթ փարան մէկդի դնելով, տարուան մը մէջ 26 դահեկան կը ժողվուի։

Ինչպէս որ յառաջուց ըսի, դարձեալ զնոյնն կը կրկնեմ թէ, պէտք է որ այս Ընկերութեանս գլուխը անցնին այնպիսի Եկեղեցականք և Աշխարհականք, որոց վերայ ժողովուրդն վստահ և ապահով է, և որոց միշտ յարգ և պատիւ ընծայած է. վասն զի ես ինքս այս ըսածս շատ անգամ աչօքս տեսի, և փորձով ստուգեցի։ Այն անձինքներն, որոց վերայ ժողովուրդն վստահ էր, քիչ օրուան մէջ շատ դիւրութեամբ մեծ գումարներ ժողվեցին 'ի նպաստ ազգային գործողութեանց։ Բայց պէտք է որ Ընկերութեան գլուխը գտնուին այնպիսի անձինք, որք ուրիշ առթից մէջ ալ յաջողակութիւն ցուցած են. և 'ի մասնաւորի երկրագործական զբաղմանց պարապած ըլլան։ Այսպիսիներ Ազգիս մէջ չեն պակսիր. և թէպէտ երկրագործական ուսումն բաւական տարածուած չէ մեր մէջ, բայց կան այնպիսիներ,

որոնք Երկրագործական հաստատութեանց գլուխն անցնելու կարող են։ Թէպէտ և շատերուն անունները կրնայի հոս շարել, բայց առ այժմ բաւական ըլլայ յիշատակել Մեծապատիւ Խաթիմարաճեան Գէորգ, Ամասեան Յակովբ և Երամեան Յովակիմ էֆէնտիները, որոնք՝ ինչպէս նաև ուրիշներն ալ, կրնան Երկրագործական վարժարանաց Տեսչութիւնը կամ վերին հոգը ստանձնել և ամենայն գոհութեամբ կատարել։ Եւ ստոյգ իրենց փափաքն ալ այս է, որ Արեւելքին մէջ Երկրագործութեան արուեստը յառաջացնեն և ծաղկեցընեն, որ է աղբիւր ամենայն բարեաց։

Միթէ մեք, Սիրելիք, այնչափ անզօր, այնչափ բըթամիտ և այնչափ անկարող ազգ մի լինիմք, որ չկարենամք այսչափ դիւրին և օգտակար ձեռնարկութիւն մը 'ի գլուխ հանել։ — Քաւ լիցի, Հայազգի Եղբարք։ փութացուք ուրեմն հաստատել Երկրագործական ընկերութիւնը, և կարգել անոր առաջին Մատակարար ժողովը։ Նախանձաւոր ըլլամք յԵւրոպա և յԱմերիկա հաստատուած մեծամեծ ընկերութեանց, և անոնց ժողովարարութեան հետեւիմք, որ ինչչափ դիւրին, այնչափ ալ արդիւնաւոր է։ Զանազան ընկերութիւններ, որոց անունները տալ երկար կ'ըլլայ, ամեն տարի միլիոնաւոր ֆրանք կը ժողովեն այսպիսի դիւրիմաց և դիւրակատար ոճով։ Ամեն քաղաք, ամեն գիւղ, ամեն թաղ պաշտօնեայներ կարգած են, որք հազարապետի, հարիւրապետի և տասնապետի պաշտօն կը վարեն։ Տասնապետներն իրենց յանձնուած տասը անձանց նուէրը ժողովելով հարիւրապետին կը յանձնեն։ Նոյնպէս հարիւրապետներն ալ իրենց յանձնուած տասն տասնապետաց հանգանակութիւնը ժողովելով կը յանձնեն հազարապետներուն, և ասոնք ալ ընկերութեան կեդրոնական արկեղ հետ հարկաւոր յարաբերութիւնները կը կատարեն։ Նոյն ընկերութիւնները գտած են գործունեայ և եռանդուն անձինքներ, աշխարհականք և եկեղեցականք, տիկնայք և օրիորդք, որոնք ըստ չափու կարողութեան

իւրեանց կ՚աշխատին այսպիսի ժողովարարութեանց ամենայն փութով. ի՞նչու չկարենամք գտնալ մեք ալ մեր Ազգին մէջ՝ օտար ազգաց նման փոյթեռանդն և աշխատասէր անձինք. մանաւանդ թէ մինչ Եւրոպիոյ և Ամերիկայի ընկերութիւններէն շատերը իրենց նուիրաց և փութոյն ենթակայ եղած են օտար ազգերը, մեք նոյն իսկ մեր Ազգին համար պիտի աշխատիմք և այն Երկրագործական ընկերութեան միջոցաւ մեր հայրենակցաց աչքին արտասուքը պիտի սրբեմք. մեր ազգայնոց յետին խեղճութենէ ազատելուն համար պիտի ընծայեմք մեր դուզնաքեայ նուէրը, առանց ամենեւին մեր անձնական շահուն և դիւրութեան փոյթ մը հասցնելու կամ նուազութիւն մը պատճառելու. Երբոր կը մտածեմք իւրաքանչիւր աստիճանի անձանց տարուան մը մէջ եղած ծախքը. երբոր կը տեսնամք, թէ ինչ գումարներ կը վատնէ իւրաքանչիւր ոք իւր զուարճութեանց և զբօսանաց, զարդուց և պճնանաց, և շատ մը աւելորդ ծախուց համար. երբոր կ՚իմանամք որ ամեն հարուստ, ունեւոր, արհեստաւոր և վաճառական, առանց դժուարութիւն մը զգալու, իւր աւելորդ ծախուց հազարին կամ հարիւրին մէկը պակսեցնելով կրնայ իւրաքանչիւր տարին իրեն ընտանեաց մարդաքանակին համեմատ Մէճիտիէ մը տալ. նոյնպէս կանայք, օրիորդք իսկ իրենց զարդարանքներէն մանրիկ կտոր մը պակսեցնելով նոյնը կրնան հայթայթել. Գործաւորին և աղքատաւոր ծառային համար ալ՝ ինչպէս վերը ըսինք, շաբաթը տասնուհինգ կամ քսան բարայի խնայողութիւն մի է տարին Մէճիտիէ մը ճարելը. և այդ գումարը Հայաստանի թշուառ ազգայնոց երջանկութեան և բարօրութեան համար պիտի նուիրեն.

Կարծեմ թէ երբ իւրաքանչիւր Հայազգի իմանայ անգամ մը Երկրագործական ընկերութեանս ազնիւ նպատակը. երբ գիտնայ թէ ինչ պզտիկ նուէրով ինչ մեծ օգուտ պիտի քաղուի, չկրնար ամենեւին իւր մտաց մէջ երկբայել, և չյօժարել իւր ազգասէր

զգացմանց տարեկան տուրքը և հարկը հատուցանել.» 'ի դիւրութիւն իւր ողորմելի համազգեաց։ Ես որ զԱզգս ճանչցած եմ, ես որ այսչափ տարւոյ փորձառութեամբ գիտեմ թէ ի՛նչ է իւր զգացումը, և ի՛նչ է իւր կարողութիւնը, վստահ եմ թէ պիտի չգտնուի մէջերնէս անձ մը որ ընկերութեանս մասնակից չըլլայ. և տարիէ մը ետքը մատով պիտի ցուցուի այն Հայը, որ այդչափ պզտիկ նուէր մը այդպէս ազնիւ և ազգօգուտ նպատակի մը համար զլացած ըլլայ։

Երկրագործական Ընկերութեան ընթացքը ժամ մը յառաջ գործադրելու համար ուրիշ միջոց մ'ալ կ'առաջարկեմ. և այնպէս կարծեմ թէ նոյն առաջարկութիւնը Հասարակութենէն դիւրաւ ընդունելութիւն պիտի գտնայ։ Հայաստանի մէջ բազմաթիւ հին և անուանի վանքեր կան, որոնց թիւը՝ գիտցողներուն զրուցածին նայելով, երկու հարիւրէն պակաս չէ։ Ասոնք բաւական մասին մեծակառոյց և հոյակապ շինուածներ են, որոնց մէջ վաթսունէն աւելի անձինք կրնան բնակիլ։ Բայց հիմայ հազիւ թէ քանի մը Միաբանք կամ Եկեղեցականք խեղճ կերպով կ'ապրին։ Վանքերը ընդարձակ երկիրներ, արտեր, ագարակներ և անտառներ ալ ունին, բայց երեսէ թողուած, անմշակ և խոպան անապատի կը նմանին. և ուր որ բոլորովին անմշակ չեն, չնչին գնով վարձու տրուած են, որով ամենեւին ո՛չ վանքերը և ո՛չ Ազգը օգուտ մը չեն քաղեր այդպիսի ընդարձակ և բազմաթիւ կալուածներէ։

Արդ՝ իմ միտքս եկածը այս է որ, Երկրագործական Ընկերութիւնը փոխանակ նորէն երկիր գնելու և չէնք շինելու, որ միշտ արտաքոյ կարգի ծախուց դուռ մի է և ընկերութեան ծանր բեռ, կրնայ այդ վանքերը իրենց կից և սեփհական ագարակներովը թէ ո՛չ ձրի, գոնէ նուազ և ինչուան հիմայ վարձուած գնով ինքն վարձու առնուլ, երեսուն՝ քառասուն՝ յիսուն կամ աւելի երկար տարիներու միջոցի մը համար. վանքերն չէնքերն մէջ վար-

ժարանը հաստատել, և ագարակն ալ ոչակերտաց ձեռօք մշակել. որով թէ վանքը, թէ ընկերութիւնը և թէ Ազգը մեծամեծ օգուտներ կը քաղեն։ Վանաց մէջ գըտնուող Միաբանք և կամ ուրիշ Եկեղեցականք կրնան միանգամայն իրենց վանքին մէջ մնալ, և ոչ թէ միայն աշակերտաց հոգեւորական պէտքերը հոգալ, հապա վարժարանին մէջն ալ վարժապետի և դասատուի պաշտօն վարել, որով թէ իրենց գեղեցիկ զբաղմունք մի ունենալ, և թէ Ազգային ծառայութեան մէջ արդիւնաւոր ըլլալ, և ընկերութեան ալ ձեռնտուութիւն ընել։ Առայժմ բաւական է երեք և չորս վանք միայն ընտրել այդ նպատակին ծառայեցնելու համար. յապագային կը տեսնուի՝ թէ ինչչափ պէտք է ընդարձակել աս ընկերութեան արդեանց տարածութիւնը։

Եթէ այս խորհուրդս ընդունելութիւն գտնայ, և առաջին անգամ յարմար վանք մը գտնելու որոշողութիւն տրուի, ընկերութեան Մատակարար ժողովոյն կ՚առաջարկեմ, որ 'ի Նկատի առնու Տրապիզոնի մօտ եղող Ցխտուս Փրկիչ վանքը, զոր ես չեմ տեսած, բայց տեսնողներէն անոր վրայօք շատ քաջալերիչ տեղեկութիւններ առած եմ։ Այդ վանքը՝ ինչպէս կ՚ըսեն, Տրապիզոն քաղաքէն ժամ մի հեռու, գեղեցիկ բլրակի մը վերայ շինուած է։ Շէնքը կանոնաւոր և ընդարձակ, իբր երկու հազար քառակուսի կանգուն փակոցը մէկտեղ. քովն ալ հոյակապ Եկեղեցի մը։ Ունի նաև ամեն կերպ յարակից շինութիւններ, որոնք Երկրագործական վարժարանի և ագարակի մը կարեւորք են, ինչպէս շտեմարանք և ախոռք։ Բլուրին ստորոտէն կ՚անցնի գետակ մի, և վանքին մօտ Տրապիզոնէն Կարին դացող կառուղի մեծ ճանապարհը։ Երկիրն արգաւանդ, ամեն կերպ մշակութեան յարմար, մէկ մասը անտառ, օդը առողջ, և մէջն ալ՝ Լուսաղբիւր ըսուած քաղցր ջրոյ վտակը։ Երկրին ընդարձակութիւնը տասնեհինգ հազար արտավարէ աւելի է։ Դիրից նկատմամբ պէտք է յիշել, որ Տրապիզոն ծովեզերեայ քաղաք մի է, վաճառաշահութեամբ

ծաղկեալ, ուր զանազան ազգաց նաւեր յաճախ կ'երթեւեկեն, ուր բոլոր Հայաստանի և Պարսկաստանի բերքը կ'իջնայ, ամեն կերպ դիւրութիւններ կը գըտնուին, յարաբերութիւնք դիւրին են, գաւառին կուսակալը հոն կը նստի, և ամեն Եւրոպական Տէրութեանց Հիւպատոսք հաստատուած են։

Ասկէց աւելի յարմար դիրք մը դժուարաւ կրնայ գտնուիլ. այսու հանդերձ այժմ այս վանքին մէջ միայն քանի մի Մխաբանք կը բնակին։ Երկիրը տարեկան տասն հազար դահեկանի վարձուած է 'ի պէտս դպրոցին Տըրապիզոն քաղաքի։ Երկրագործական ընկերութիւնը կրնայ ինքն վճարել, 80 կամ 100 ոսկին, և հոն իւր առաջին Երկրագործական վարժարանը հաստատել, ըստ որում շէնքը պատրաստ և երկիրը ընդարձակ է։

Հայաստանի վանքերէն յուսացուած այդ օգուտը քաղելու համար, պէտք է որ Եկեղեցականք ալ իրենցմէ սպասուած դիւրութիւնը պատրաստեն, և իրենց գործակցութիւնը և ձեռնտուութիւնը ընծայեն Երկրագործական Ընկերութեան Մատակարար ժողովոյն։ Յայսըմ մասին աւելորդ կը սեպեմ ինձ վիճակակից՝ Եկեղեցւոյ պաշտօնէից ալ առանձինն յորդոր մը ուղղել, և առանձինն իրենց ձեռնտուութիւնը հայցել։

Ինչ որ ըսեն ոմանք Եկեղեցականութեան և Եկեղեցականաց նկատմամբ, սակայն մեր Ազգին Եկեղեցականք ամեն ատեն իրենց հայրենասիրութեանը և ազգասիրութեանը լուսաւոր նշաններ տուած, և անուրանալի արդիւնքներ ցուցուցած են. և կրնամ իսկ համարձակիլ ըսել՝ թէ Ազգս պարտական է Եկեղեցականաց, որոնք վանորէից շինութեամբ, դպրոցաց հաստատութեամբ, և ժողովուրդը իւր լեզուովը և ծիսովը հովուելով՝ Հայոց ազգութիւնը մինչեւ ցայսօր պահպանեցին։ Թէ որ մէկը Ազգիս պատմութեան աչք մը նետէ, և նըկատէ վերջին հինգ դարերու մէջ Ազգին գլխէն անցած տառապանքները ու հարուածները, հուրը և սուրը, և մոլեռանդն ու կրօնամոլ բռնաւորաց ձեռքէն կրածը,

պէտք է զարմանալ, թէ ի՞նչպէս այս ազգը դեռ աշխարհիս վերայ կեցեր է ապրիլ։ Եւ ստոյգ այս նկատմանց համար Ազգս Եկեղեցականաց դասուն պարտական է։

Բայց աւաղ այսօրուան օրս այնքան վանորայք, որոնցմէ անշուշտ կրնայ Ազգս մեծամեծ օգուտներ քաղել, անոնք ալ Եկեղեցականաց ջանիւք հիմնուեցան և պահուեցան։ Այսու չեմ ուզեր ըսել թէ, ամեն բան և գործ | Եկեղեցականաց սեփհականուի, և կամ անոնց թողուի։ Ոչ այսպէս. այլ պէտք է Եկեղեցականք և Աշխարհականք ազգովին ձեռք ձեռքի տալով 'ի միասին աշխատին մէկ սրտով և մէկ հոգւով, մէկ դիտմամբ և մի և նոյն վախճանաւ հասարակաց բարւոյն համար։ Քանի որ ամեն գաւառի մէջ կան վանորայք և ընդարձակ կալուածք և բաւական արտօրայք, իւրաքանչիւր Ազգայինք կը պարտաւորին մատուցանել իրենց փոքրիկ նուէրը, ձեռնտուութիւնը, որով այսչափ ողորմելի գիւղացւոց որդիք կարենան կրթուիլ յերկրագործութեան, յուսմունս և 'ի յարակից արուեստս։

Անշուշտ Նախախնամութիւնը պահեց և խնամեց այն ամեն վանքերը, որպէս զի այսօր Ազգն քիչ ժամանակուան մէջ՝ անոնցմէ մեծամեծ օգուտներ կարենայ քաղել. Գիտեմ որ իմ առաջարկութիւնս գեղեցիկ և համօզողական հիւսուածով գրուած չէ. գիտեմ նաև թէ բազում ինչք, գործադրութեան նկատմամբ, պէտք էր ուրիշ կերպ կերպ դիտողութիւններ ընել, և միջոցները քննել, և ճանապարհները որոշել. բայց ինձ բաւական է Ազգիս իմաստուն քաղաքադիտաց ուշադրութիւնը հրաւիրել այս կարեւոր կէտին վերայօք։ Անոնց կը թողում՝ որք քան զիս առաւել հմտութիւն, կարողութիւն, յարմարութիւն, միջոց և աշխոյժ ունին։ Անոնց կը թողում. այս գործը ձեւակերպել և հաստատել և անմիջապէս գործադրել այսօրուընէ սկսելով. և, գոնէ առանց մերձակայ աշնան եղանակը անցունելու՝ վաղընդփոյթ Տրապիզոնի վանքին մէջ առաջին Երկրագործական վարժարանը բանալ։

Յայսմ մասին որ և իցէ ջանք և աշխատանք աւելորդ չէ․ և հարկ է ամէն փութով աշխատիլ որ երկրագործութիւնը յառաջանայ Հայաստանի մէջ ։ Այս փափաքանաւ մեր Հայազգի երկրագործաց, որոց վարժարանաց մէջ կրթուելոյն ատենը անցած է, անոնց ալ հիմակուանէ օգնութիւն մի ընելու փափաքելով աղաչեցի Մեծապատիւ Երամեան Յովակիմ էֆէնտիին փոքրիկ և առձեռն երկրագործութեան տետրակ մի շարադրել՝ Հայաստանի հողագործաց գործածութեան համար ։ Յիշեալ Ազգասէր անձն, որ Գաղղիոյ և Իտալիոյ վարժարանաց մէջ երկրագործական բարձր ուսմանց ընթացքը կատարած և վկայական ընդունած է, և հիմակ ալ Տէրութեան Երկրագործութեան պաշտօնատեղւոյն մէջ իւր փորձառու հանճարը յայտնած է, յանձնառու եղև մեր սերտ յիշեալ տետրակը պատրաստել․ որուն մէջ ամփոփեցնել Հայ Երկրագործին՝ ցորեան, գարի, վարսակ, գետնախնձոր, եգիպտացորեն, բրինձ, կտաւատ և բամպակ մշակելու կանոնները ։ Կը յուսամք եթէ քիչ օրէն այս տետրակն ալ կը հրատարակուի և կը բաշխուի ի վայելս և դիւր Հայաստանցի եղկելի Եղբարց ։ Այդ ծանօթութիւնը տալոյս նպատակը ուրիշ բան չէ, բայց եթէ բոլոր կարող անձանց նախանձայուզութիւնը շարժել, որպէս զի իւրաքանչիւր ոք ձեռքէն եկածը ընէ Ազգիս մէջ երկրագործութիւնը զարգացընելու համար ։

Ի վերջ բանիցս նախ առ Ձեզ դիմեմ պատկառելի Պաշտօնեայք Հայաստանեայց Եկեղեցւոյ՝ առ հասարակ յամենայն կարգէ և յաստիճանէ ։ Ի Ձեզ հաւատացան ողորմելի ժողովրդեան ամեն հոգ և խնամքը ։ Ձեզմէ կախուած է անոնց երջանկութիւնը ։ Դուք միայն կարող էք զանոնք սփոփել, մխիթարել, և իրենց բուն հոգւոյ և բուն մարմնոյ երջանիկ ապրելու օգտակար ճանապարհները ցուցանելով անոնց առաջնորդել ։ Պաշտօնակից Եղբարք իմ սիրեցեալք, ի՞նչ է մեր կոչումը․ բայց եթէ ժողովրդեան հոգք ըստ ամենայնի ։ Ի՞նչ պիտի ըլ-

լայ մեր նպատակը . բայց եթէ ժողովրդեան կատարեալ երջանկութիւնը ։ Դուք Պաշտօնեայք Եկեղեցւոյ , դուք աւելի ի մօտոյ կը ճանաչէք գաւառաց մէջ գըտնուող՝ Ազգին աղքատաց թշուառ վիճակը ։ Այս աղքատ ժողովուրդը Ձեր բերնէն կ՚սպասէ լսել՝ թէ ո՞րն է աստուածահաճոյ և հասարակաց բարւոյն ազգօգուտ գործը , նպատակը և միջոցը ։ Ձեր բաժինը ժողովուրդն է և ժողովրդեան նուիրուած էք . ապա ժողովրդեան օգտին գործածեցէք Ձեր խօսքը , Ձեր ազդեցութիւնը , Ձեր միջնորդութիւնը և Ձեր օրինակը ։ Եւ ի՞նչ աւելի օգտակար գործ քան թէ երկրագործութեան զարգացմամբ յարմարոյ բուժել Ազգին աղքատաց թշուառութիւնը ։

Եւ Դուք, Մեծամեծ Իշխանք և Մեծատունք Ազգին , Դուք որ բարձր պաշտամանց հասած բաւական հարստութիւն ալ ունիք , անհրաժեշտ պարտք մը կայ Ձեր վերայ ալ ։ Ձեր ազդեցութեամբը , և Ձեր առատ զուարթ ձեռնտուութեամբը հայրենակից աղքատ և ողորմելի եղբարց ձերոց օգնութեան պիտի հասնիք ։ Գիտցէք որ Ձեր այս ամեն վայելած բարիքներն պարապ տեղ Ձեզի յերկնից ի վերուստ իջած և պարգեւուած չեն ։ Ուստի կը պարտաւորիք Ձեր ստացած բարիքներէն փոքրիկ մաս մը՝ Ձեր լայնատարած ծախուց ծովէն կաթիլ մը շնորհել , որով ձեր այսչափ հեռաւոր ողորմելի եղբարց աղքատութեան դարման մատուցուի ։ Միայն Ձեր ազդեցութիւնը , Ձեր միջամտութիւնը և Ձեր ձեռնտուութիւնը բաւական է իսկոյն Երկրագործական ընկերութեան հիմնարկութիւնը պատրաստել ։ Եւ Ձեր ծախուց մէկ կաթիլը բաւական է Երկրագործութեան առաջին նախնական վարժարանը կանգնել ։ Ասկից աւելի ի՞նչ մեծ ուրախութիւն և մխիթարութիւն կընայ ըլլալ հարուստ մեծատունի մը , երբոր [illegible] ըլլայ որ իր ողորմելի և աղքատ ազգայնոց որդիքներն հեռաւոր Հայաստանի դաշտերէն անդադար կ՚օրհնեն , և բիւր բարիս կը մաղթեն բարերարին իւր-

եանց յաւիտեանս ժամանակաց, որ այնչափ ողորմելի ընտանեաց երջանկութեան պատճառ եղեւ։

Եւ դուք, Ազգայինք և Ժողովրդականք առ հասարակ, դուք ալ ունիք ձեր աստիճանին և վիճակին համեմատ պարտաւորութիւն մը։ Ձեր կարողութեան չափ Ազգին յառաջադիմութեանը պիտի օգնէք, և Ազգին թշուառութեան դարման տանելու պիտի աշխատիք։ Եւ ի՞նչ աւելի դիւրին ճամբայ, քան թէ Երկրագործական ընկերութեանս բաժնի մը տարեկան նուէրով ամենամեծ ազգային օգուտի մը գործակից և մասնակից ըլլալ։

Վերջապէս դուք ալ, գրագէտք և ուսումնական անձինք, և դուք, որ ազգային օրագրաց՝ լրագրաց և հանդիսից հրատարակութեան կ'զբաղիք, դուք ալ կարող էք մեծամեծ օգուտներ ընել. միայն թէ սոյն ազնիւ և ազգօգուտ նպատակին ծառայեցնէք Ձեր լեզուն ձեր գիտութիւնը, ձեր գրիչն և ձեր թերթերը։ Եթէ գեղեցիկ յօդուածներով ժողովրդեան միտքը լուսաւորէք, եթէ օգուտներուն բացատրութեամբը անոր վըհատեալ սիրտը շարժէք, եթէ Երկրագործական հըմտութեանց և ծանօթութեանց նուիրէք Ձեր երկասիրութեանց մէկ մասը։

Ես ինքզինքս երջանիկ պիտի սեպեմ, եթէ առաջարկութիւնս ընդունելութիւն գտնայ, եթէ ալեւորեալ հասակիս մէջ կարենամ հանիլ այն օրուան՝ յորում Երկրագործութեան վարժարանի մը արդիւնքը պիտի տեսնուի. և սոյն ազնիւ և նախնական արհեստին մէջ մարզեալ պատանիներ, վարժարանին ագարակին մէջ արօրը թողլով՝ իրենց հայրենական կալուածոյն մէջ մաճը ձեռք առնուն։

Հ. ՊՕՂՈՍ Վ. ՊՕՑՆՈՒԷՑՐԻԵԱՆ
Անտոնեան Միաբանութենէ

Քանի մը կանոնք եւ Հրահանգք Երկրագործական Ընկերութեան, եւ իւր Վարժարանաց։



## Ա.

### ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

*1° Երկրագործական Ընկերութիւնը հաստատուած է ի Կոստանդնուպոլիս՝ Հայաստանի և Հայաբնակ գաւառաց մէջ Երկրագործութեան նախնական վարժարաններ բանալու համար։*

*2° Ընկերութիւնը ունի Մատակարար Ժողով մը, բաղկացեալ յերկոտասան խորհրդականաց ընդ ատենապետին, որ Ընկերութեան վարչութիւնը կը կազմէ, և պաշտօնակալաց գործոց վերայ կը հսկէ։*

*3° Ընկերութեան Պաշտօնակալք են Ատենապետը, Գանձապետը, Հաշուակալը, վարժարանաց տեսուչները և հանգանակութեան հաւաքարարները։ Անոնց ամենուն ըստ հարկին օգնականներ ալ կը տրուին։*

*4° Ընկերութեան զանազան գործառնութեանց համար և ըստ պիտոյից մասնաւոր յանձնաժողովներ կ՚ընտրուին Մատակարար Ժողովէն։*

*5° Ընկերութեան ժողովոց և պաշտօնէից անխտրաբար թէ եկեղեցականք և թէ աշխարհականք ընտրելի են։*

*6° Մատակարար Ժողովը պարտաւոր է տարին անգամ մը գրաւոր տեղեկագիր մը հրատարակել Ընկերութեան մտից և ելից և յառաջադիմութեան, վարժարանաց թուոյն և աշակերտաց և ծախուց և ստացուածոց, և այլ ուրիշ կարեւոր կէտերու վերայ։*

*7° Ընկերութեան Ընդհանուր ժողովը Մատակարար Ժողովոյն գործերը կը քննէ, և իւրաքանչիւր տարի նոյն Մատակարար Ժողովոյն երրորդ մասը նոր ընտրութեամբ կը նորոգէ։*

## Բ.

### ԴՐԱՄԱԿԱՆ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆ

8° Ամեն Հայազգի, թէ այր և թէ կին, ընկերութեան անդամ կրնայ գրուիլ բաժին մը վճարելով։

9° Ընկերութեան տարեկան բաժինն է քըսաննոց արծաթ Մէճիտիյէ մի, վճարելի կանխիկ կամ մաս առ մաս ըստ մասնաւոր կանոնաց։

10° Ընկերք կրնան նաև մէկէն աւելի բաժնի գըրուիլ. և ըստ այնմ աւելի ձայն կ'ունենան։

11° Որք մէկ անգամէն չորս Օսմանեան ոսկի վըճարեն, մշտնջենաւոր ընկեր կը սեպուին։

12° Բաժնից հանգանակութեան համար տասն ըընակակից մերձաւոր ընկերներէն մէկը տասնապետ կ'որոշուի, և անոնց բաժինները կը ժողովէ և Հարիւրապետի մը կը յանձնէ։ Հարիւրապետը տասն տասնապետներուն հաւաքածը Հազարապետի մը կը յանձնէ, և անիկայ ալ գանձապետին որոշած կերպովը տասն Հարիւրապետներէն առած գումարը Ընկերութեան արկըղ կը յանձնէ։

13° Նաև կանայք կարող են Տասնապետի և Հարիւրապետի պաշտօն վարել։

## Գ.

### ՆԱԽՆԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆՔ ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ

14° Վարժարանները պիտի բացուին քաղաքաց մօտ կամ գիւղօրէից մէջ, իրենց ունենալով աշակերտութեան յարմար և բաւական ընդարձակ երկիր մը, հաշուելով յիսուն արտավար առ իւրաքանչիւր աշակերտ։

15° Վարժարանները շատ մեծ և փառաւոր ըլլալու չեն, որպէս զի աւելի գիւղաւ քանակաւ տեղեր վարժարաններ բացուին. բայց իւրաքանչիւրը գոնէ քառասուն աշակերտաց բաւական պիտի ըլլայ։

16° Աշակերտաց ուսման ընթացքը չորս տարւոյ բաժնուած է, և իւրաքանչիւր տարի ուսումնաւարտ դասուն տեղ նոյնչափ նոր աշակերտք կ՚ընդունուին։

17° Աշակերտք իրենք պիտի մշակեն երկիրը, բայց առջի տարիներուն մէջ իրենց խակութեան պատճառաւ հարկ է արտաքուստ մշակներ վարձել. բայց վերջէն, որչափ հնար է, այդ մշակները պակսեցնելու է։

18° Աշակերտները ընդունուած ատեններին պէտք է որ առ նուազն տասնուչորս տարեկան ըլլան, կազմուածքով առողջ, և աշխատելու և կրթուելու յարմար։

## Դ.

## ՈՒՍՄՈՒՆՔ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

19° Այնպէս կ՚ենթադրուի որ աշակերտք յառաջուց հասարակ նախակրթական վարժարանաց մէջ ընթեռնուլ, գրել և հաշուել սորված ըլլան. միանգամայն Հայ լեզուի, և պատմութեան, և աշխարհագրութեան վրայ տեղեկութիւն ունենան, ապա թէ ոչ Երկրագործական վարժարանը պէտք է որ ասոնք ալ հոգայ։ Եթէ քիչ մը գիտեն, պէտք է որ նոյն ուսմանց մէջ յառաջանալնուն հոգ տանի։

20° Վարժարանին մէջ պիտի աւանդուին նաև բնական պատմութեան և երկրագործութեան ընդհանուր գիտելիք, ինչպէս. ճանչնալ հողոց տեսակները և յատկութիւնները, կենդանեաց բնաւորութիւնները, հիւանդութիւնները և դարմանները. երկրին բերոց պահպանութիւնը, կաթնեղինաց՝ ինչպէս պանրի, և կոգւոյ շինութիւնը, այգւոյ մշակութիւնը, ազնիւ և սովորական գինիներ շինելոյ կերպերը ևն. ևն.։

21° Առանձինն խնամ պիտի տարուի երկրագործական հին և նոր գործեաց գործածութիւնը և օգուտները սորվեցնելու։

22°. *Աշակերտքն պիտի գիտնան նաև ի մասին հաշւոյ՝ կոտրուածոց ելքը և մուտքը բաղդատել, և մասնաւոր հաշիւներ բանել, երկիր մը չափել, և յատակագիծը թղթոյ վրայ դծագրել. և այլ այսպիսիս։*

24°. *Նմանապէս պիտի ուսանին բնագիտութեան և բնալուծութեան այն սկզբունքները, որոնք մշակութեան պիտոյից ամենահարկաւոր են։*

24°. *Երկրագործական ուսմանց մաս կը կազմեն մշակութեան յարակից արուեստներ, ինչպէս. դարբնութիւն, հիւսնութիւն, տաղձագործութիւն և որմնադրութիւն, որոնք հարկաւոր են երկրագործին իւր առօրեայ պիտոյքը լեցնելու առանց ուրիշին կարօտ ըլլալու, կամ մանր մէկ վնասու համար իւր գործէն դադրելու. ինչպէս եթէ ձեռքի գործին կոտրուի, կամ թէ ախոռին կամ բնակարանին մէկ կողմը աւրուի, և կամ թէ բան մը աւելցնելու հարկ ըլլայ։*

25°. *Երկրագործական ուսմանց դասը, աշխատանքը, արուեստից պարապումը, և այլ զանազան զբաղմունքները այնպէս պիտի բաշխուին օրուան և եղանակին համաձայն ժամանակագրով մը, որ ոչ ագարակին պիտոյքը ետև մնայ, և ոչ ալ աշակերտաց յառաջադիմութիւնը վնասուի։ Ընդհանրապէս օրուան կէսը ուսման, և միւս կէսն ալ աշխատանքի տալու է։*

## Ե.

### ԲՆԱԿՈՒԹԻՒՆ ԵՒ ԶԳԵՍՏ

26°. *Երկրագործական վարժարանաց շէնքին համար բաւական է, որ օդը առողջ և դիրքը գեղեցկահայեաց ըլլայ, և մէջը ըստ ամենայնի կատարեալ մաքրութիւն պահուի. ապա թէ ոչ աւելորդ՝ մանաւանդ թէ վնասակար ևս է գեղեցիկ և զարդարուն շէնքեր ունենալ։*

27°. *Վարժարանաց մէջ բնակութիւնը, կերակուրը,*

